Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՓԵՏՐՎԱՐ 3 1961



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

### ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ



### ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ



---



# ՀԱՆՈՒՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՎԵՐԵԼՔԻ

Կոմունիստական պարտիայի և ժողովրդի կյանքում խոշորագույն իրադարձություն էր ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը, որը որոշեց 1961 թվականի հոկտեմբերի 17-ին հրավիրել Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարը և հաստատեց նրա օրակարգը։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը համակողմանիորեն քննարկեց սոցիալիստական գյուղատնտեսության վիճակը և մշակեց գյուղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերի հետագա զարգացման կոնկրետ ծրագիր։ Այդ կապակցությամբ պլենումը լսեց և քննարկեց ՌՍՖՍՌ Մինիստրների Սովետի, Ուկրաինայի Կոմպարտիայի Կենտկոմի, Ղազախստանի Կոմպարտիայի Կենտկոմի, Ղազախստանի Կոմպարտիայի Խոպանի երկրկոմի, Բելոռուսիայի, Ուզբեկստանի, Վրաստանի, Ադրբեջանի, Լատվիայի, Մոլդավիայի, Լիտվայի, Կիրգիզիայի, Տաջիկս-

տանի, Հայաստանի, Թուրքմենստանի և Էս-
տոնիայի Կոմպարտիայի Կենտկոմների զե-
կուցումները հողագործության ու անասնա-
բուծության մթերքների արտադրության և
պետությանը դրանց վաճառքի 1960 թվա-
կանի պետական պլանի ու սոցիալիստական
պարտավորությունների կատարման և գյու-
ղատնտեսության հետագա զարգացման մի-
ջոցառումների մասին։

Պլենումի որոշման մեջ, ընկեր Ն. Ս.
Խրուշչովի ելույթում տրված է գյուղատնտե-
սության վիճակի խոր վերլուծությունը, ընդ-
հանրացված է գյուղատնտեսական մթերքնե-
րի արտադրության շեշտակի վերելքի հա-
մար պարտիական կազմակերպությունների
և գյուղի աշխատավորների պայքարի փոր-
ձը, բացահայտված են նրա ավելի արագ
զարգացման ռեալ հնարավորություններն ու
հեռանկարները։ Այս փաստաթղթերում սուր
քննադատության են ենթարկված գյուղա-
տնտեսության ղեկավարման թերություննե-
րը, պարզորոշ նշված են երկրի գյուղատըն-
տեսության հետագա զարգացման գլխավոր
ուղղությունները. բնակչության հարաճուն
պահանջմունքների լրիվ բավարարման հա-
մար, հացահատիկի, մսի, կաթի և մյուս





մթերքների արտադրությունն ավելացնելու
կոնկրետ խնդիրները։

ՍՄԿՊ Կենտկոմի 1953 թվականի Սեպ-
տեմբերյան պլենումից հետո անցած ժամա-
նակաշրջանը գյուղատնտեսության վերելքի
տարիներ էին։ Մեր պարտիայի և ամբողջ սո-
վետական ժողովրդի կատարած մեծ աշխա-
տանքի շնորհիվ ավելացան գյուղատնտեսա-
կան բոլոր մթերքների արտադրությունը և
պետական գնումները։ Այդ մասին են վկա-
յում աներկբա փաստերը։ Այսպես, յոթ
տարվա ընթացքում հացահատիկի արտա-
դրությունն աճեց ավելի քան 3 միլիարդ
փթով և 1960 թվականին կազմեց 8 միլիարդ
131 միլիոն փութ, իսկ գնումները հասան
2 միլիարդ 852 միլիոն փթի, ավելանալով
գրեթե մեկ միլիարդ փթով։ Հացահատիկի
արտադրությունն ու մթերումները ավելաց-
նելու համար մղվող պայքարում վճռական
դեր խաղաց խոպան հողերի յուրացումը։
Նույն ժամանակաշրջանում մսի արտադրու-
թյունն աճել է մեկ ու կես, իսկ գնումները՝
ավելի քան երկու անգամ, կաթինն ավելա-
ցել է 1,7 անգամ, իսկ գնումները՝ գրեթե
երկուս ու կես անգամ։ Մեր երկիրը առաջ
չէր տեսել գյուղատնտեսական արտադրու-
թյան զարգացման այնպիսի տեմպեր, ինչ-
պես վերջին յոթ տարում։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը, նշելով սոցիալիստական գյուղատնտեսության անվիճելի հաջողությունները, միաժամանակ ընդգծեց, որ գյուղատնտեսական մթերքների, հատկապես անասնաբուծության մթերքների արտադրության մակարդակը և աճման տեմպերը անբավարար են։ 1960 թվականին անասնաբուծության մթերքների արտադրության աճը լրջորեն ետ էր մնում յոթնամյա պլանով նախատեսված ցուցանիշներից։

Վերջին տարիներս մեծ փոփոխություններ են տեղի ունեցել սովետական մարդկանց ու ամբողջ երկրի կյանքում։ Արագ աճում է երկրի բնակչությունը, մեծացել են աշխատավորների եկամուտները։ Մարդիկ հնարավորություն ունեն ավելի լավ սնվելու և ավելի լավ ապրելու։ Հետևապես նրանք պարենի և ամենից առաջ մսի, կաթի, յուղի նկատմամբ ավելի մեծ պահանջ են ներկայացնում։

Ուստի այժմ գլխավորն այն է, ինչպես հայտարարեց ընկ. Ն. Ս. Խրուշչովը պլենումում, որ եղած հնարավորություններն օգտագործենք գյուղատնտեսական մթերքների արտադրությունն արդեն այս տարի և առաջիկա տարիներին մեծապես ավելացնելու



համար։ Չի կարելի ժողովրդին միայն գեղեցիկ հեռանկար խոստանալ։ Հարկավոր է հասնել այն բանին, որ մարդիկ արդեն այսօր ունենան թե կաթ, թե միս, թե այլ մթերքներ։

Սրանից անհրաժեշտ է համապատասխան հետևություններ անել, ոչ մի դեպքում չըհանգստանալ ձեռք բերածով, այլ շարունակ ուժեղացնել լարվածությունը, հարաճուն տեմպերով առաջ մղել գյուղատնտեսության բոլոր ճյուղերի զարգացումը։

Քննարկելով գյուղատնտեսության հետագա զարգացման խնդիրները, Կենտկոմի պլենումը նշեց, որ ներկայումս գյուղատընտեսության թերությունների քննադատությունը ծավալվում է միանգամայն այլ պայմաններում, քան 1953 թվականին, ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումում։ Այն ժամանակ լրջորեն ետ էին մնում գյուղատնտեսության բոլոր ճյուղերը։ Այժմ թերությունները քննադատության են ենթարկվում սոցիալիստական էկոնոմիկայի բուռն աճի, ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների մեծ հաջողությունների պայմաններում։

Գյուղատնտեսությունը դեռևս զարգանում է ոչ այնպիսի բարձր տեմպերով, ինչպես

արդյունաբերությունը, չի համնում ին-
դուստրիայի հզոր առաջընթացին, բնակչու-
թյան պահանջների աճին։ Անհրաժեշտ է, որ
գյուղատնտեսական մթերքների արտադրու-
թյունը միշտ գերազանցի բնակչության պա-
հանջարկը։ Առանց լավ զարգացած գյուղա-
տնտեսության, առանց գյուղատնտեսական
մթերքների առատության ծաղկող սոցիա-
լիստական էկոնոմիկա լինել չի կարող։

Ուստի «Գյուղատնտեսության անշեղ վե-
րելքի համար պայքարը կոմունիստական
հասարակարգի կառուցման կարևորագույն
պայմանն է։ Դա հիրավի համաժողովրդա-
կան գործ է» (Ն. Ս. Խրուշչով)։

Այժմ, երբ մեր երկիրը թևակոխել է կո-
մունիզմի ծավալուն կառուցման ժամանա-
կաշրջանը՝ գյուղատնտեսության հետագա
րուռն զարգացման հարցը այսպես է դըր-
վում. մենք ունենք հզոր ծանր ինդուստրիա
և կարող ենք առանց վնաս հասցնելու ար-
դյունաբերության հետագա զարգացմանն ու
երկրի պաշտպանության ամրապնդմանը,
ավելի շատ միջոցներ հատկացնել ժողովրդի
բարեկեցության հետագա վերելքի համար։

Լրացուցիչ միջոցներ հատկացնելով գյու-
ղատնտեսության զարգացմանը, ասված է
պլենումի որոշման մեջ, պարտիան նպա-



տակ է դնում ստեղծել այնպիսի պայման-
ներ, որոնք թույլ տային գյուղատնտեսու-
թյունը վարել այնպես, որ նա կախում չու-
նենար բնության քմահաճույքներից, որ նա
ամեն տարի, կլիմայական բոլոր պայման-
ներում, երաշխավորեր երկրին անհրաժեշտ
մթերքների ստացումը՝ ժողովրդի պահանջ-
մունքների լրիվ բավարարման համար։

Համաժողովրդական այդ խնդրի իրա-
գործման հուսալի միջոցը, ինչպես նշեց
Կենտկոմի պլենումը, իրրիգացիան է, միլիո-
նավոր հեկտար հողերի ոռոգումն ու ջրովի
դարձնելը, ճահճակալած ու չափից խոնավ
հողերի չորացումը, քիմիական պարարտա-
նյութերի և գյուղատնտեսական տեխնիկայի
արտադրության խիստ ավելացումը։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը որպես մար-
տական խնդիր առաջադրեց. երկրի պա-
հանջմունքները լրիվ բավարարելու համար
անհրաժեշտ է առաջիկա տարիներին հա-
ցահատիկի տարեկան գնումները հասցնել
4 միլիարդ 200 միլիոն փթի, միսինը՝ 13 մի-
լիոն և կաթինը՝ 50 միլիոն տոննայի։

Միաժամանակ պլենումը սահմանեց
միութենական յուրաքանչյուր ռեսպուբլիկայի
ներդրումը համաժողովրդական այդ գոր-
ծին։ Պլենումի որոշման համաձայն Սովե-

տական Հայաստանն առաջիկա տարիների
հացահատիկի տարեկան գնումները պետք է
հասցնի 4 միլիոն փթի, մսինը՝ 43 հազար
տոննայի, կաթինը՝ 200 հազար տոննայի։
Գյուղատնտեսության առջև կանգնած
խնդիրները հաջողությամբ լուծելու համար
պլենումը պարտիական կազմակերպու-
թյունների, սովետական և գյուղատնտեսա-
կան օրգանների ուշադրությունը սրեց այն-
պիսի ռեզերվների օգտագործման վրա, ինչ-
պիսիք են՝ եգիպտացորենի հատիկի բարձր
բերքի ստացումը, հողագործության կուլտու-
րայի բարձրացումը, կովերի գլխաքանակի
աճը, ոչխարաբուծության և թռչնաբուծու-
թյան համակողմանի զարգացումը, կերի ա-
մուր բազայի ստեղծումը և այլն։
Գիտության նվաճումների, առաջավոր-
ների փորձի լայն արմատավորումը պետք է
լինեն օրինակ, դառնան այն փարոսները,
որոնք կոչված են լուսավորելու յուրաքան-
չյուր կոլտնտեսության, յուրաքանչյուր սով-
խոզի պայքարի ուղին՝ մթերքների արտա-
դրության բարձր մակարդակի համար։
Պլենումը պահանջեց ամեն կերպ բարե-
լավել գյուղատնտեսության բոլոր ճյուղերի
ղեկավարումը, ուժեղացնել կազմակերպչա-
կան-քաղաքական աշխատանքը մասսաների



մեջ։ Հատուկ ուշադրություն նվիրվեց ՍՍՌՄ
Գյուղատնտեսության մինիստրության վերա-
կառուցմանը։ Մինիստրության գործունեու-
թյունը պետք է կենտրոնացված լինի գիտա-
հետազոտական հիմնարկների աշխատանքը
բարելավելու, գիտության նվաճումների և
առաջավոր փորձի ընդհանրացման ու պրո-
պագանդման վրա։ Մինիստրությունը պետք
է ըստ գոտիների մշակի և կոլտնտեսություն-
ներին ու սովխոզներին հանձնարարական-
ներ տա տնտեսությունը ռացիոնալ կերպով
վարելու վերաբերյալ, խորապես զբաղվի
սերմնաբուծության և անասունների տոհմա-
բուծության զարգացման, գյուղատնտեսու-
թյան վնասատուների և հիվանդությունների
դեմ պայքարի կազմակերպման հարցերով։
Պլենումը հատուկ միջոցառումներ մշակեց
կոլտնտեսությունների ու սովխոզների նյու-
թա-տեխնիկական մատակարարման բարե-
լավման, պետական գնումների սիստեմը
կատարելագործելու վերաբերյալ։
Պլենումը պարտիական, սովետական,
արհմիութենական և կոմերիտական կազմա-
կերպություններին, գյուղատնտեսության բո-
լոր աշխատավորներին կոչ արեց գործողու-
թյան մեջ դնել կոլտնտեսությունների և սով-
խոզների ռեզերվները, ժամանակը ձեռքից

բաց չթողնել, ամեն ինչ անել 1961 թվականին՝ յոթնամյակի երրորդ տարում, գյուղատնտեսական մթերքների արտադրության աճի տեմպերը բարձրացնելու, պարտիայի XXII համագումարը աչքի ընկնող նոր հաջողություններով դիմավորելու համար։

Վերջում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը քննարկեց կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1960 թվականի նոյեմբերին Մոսկվայում տեղի ունեցած խորհրդակցության արդյունքները։ Այդ մասին զեկուցումով հանդես եկավ ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղար ընկ. Մ. Ա. Սուսլովը։

Պլենումը նշեց, որ կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների Մոսկվայի խորհրդակցությունը համաշխարհային պատմական նշանակություն ունեցող իրադարձություն հանդիսացավ։ Պլենումը հավանություն տվեց խորհրդակցությունում ընկ. Ն. Ս. Խրուշչովի գլխավորած ՍՄԿՊ պատվիրակության քաղաքական գծին ու գործունեությանը։ Խորին գոհունակությամբ պլենումը նշեց խորհրդակցության մասնակիցների կողմից միջազգային կոմունիստական շարժման հանդեպ մեր պարտիայի ծառայությունների միահամուռ գնահատականը, նրա գործունեության ճանաչումը որպես պրակտիկայում պրոլետարական ինտերնացիոնալիզմի ռևոլյուցիոն սկզբունքների կիրառման օրինակ, ինչպես նաև ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումների նշանակությունը մարքսիզմ-լենինիզմի հիման վրա միջազգային կոմունիստական շարժման զարգացման համար։

«Մեր պարտիայի գործունեության ու փորձի այդ բարձր գնահատականը,— ասված է պլենումի համապատասխան որոշման մեջ, — սովետական կոմունիստներին ոգեշնչում է է՛լ ավելի ակտիվորեն պայքարելու հանուն կոմունիզմի կառուցման մեր երկրում, որը առաջինը ամբողջ մարդկության համար բացեց պայծառ ապագայի ուղին, պայքարելու հանուն սոցիալիստական լագերի հզորության հետագա ամրապնդման, հանուն ամբողջ աշխարհի խաղաղության»։

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՊԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՏԵՂԱԿԱՆ ՕՐԳԱՆՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Դոցենտ Հ. Մ. Մեսրոբյան

Այս տարվա մարտի 19-ին տեղի կունե-
նան մեր ռեսպուբլիկայի աշխատավորների
դեպուտատների շրջանային, քաղաքային,
գյուղական և ավանային Սովետների ընտ-
րությունները, որոնք կկատարվեն մեր մեծ
երկրի տնտեսական և քաղաքական ընդհա-
նուր վերելքի պայմաններում, հարազատ Կո-
մունիստական պարտիայի և Սովետական
կառավարության ծրագրային որոշումների ի-
րագործման համար մղվող պայքարի պայ-
մաններում։

Տեղական Սովետների աշխատանքները
բարելավելու, նրանց կապերը մասսաների
հետ ավելի ամրապնդելու նպատակով միու-
թենական ռեսպուբլիկաների Գերագույն Սո-
վետները 1959 թվականի մարտի ընտրու-
թյունների ժամանակ զգալի չափով ավելաց-
րին տեղական Սովետների դեպուտատների
թիվը՝ մոտավորապես 350 հազարով։



ՍՍՌՄ Սովետներում այժմ մասնակցում
և աշխատում է ավելի քան մեկ միլիոն 800
հազար դեպուտատ, իսկ երկու միլիոն ակ-
տիվիստներ էլ մասնակցում են Սովետների
մշտական հանձնաժողովների գործունեու-
թյանը։ Բացի այդ, ընտրությունների շրջա-
նում ընտրական հանձնաժողովներում աշ-
խատում է 7—8 միլիոն մարդ։ Ավելի շատ
աշխատավորներ ընդգրկելով Սովետներում,
ինչպես սովորեցնում է Վ. Ի. Լենինը, Սովե-
տական իշխանությունը հնարավորություն
ունի իր պետական ապարատը դարձնելու
ճկուն և ժողովրդական մասսաների հետ սեր-
տորեն կապված։ Տեղական Սովետները ի-
րենց ամբողջ գործունեությամբ հենվում են
բազմաքանակ ակտիվի վրա, որը հասարա-
կական կարգով աշխատում է թաղամասերի,
բակերի ու ծնողական կոմիտեներում, բնա-
կելի տների շահագործմանը օժանդակող
հանձնաժողովներում, խնամակալական,
մանկապարտեզներին օժանդակող և կա-
նանց խորհուրդներում, ընկերական դատա-
րաններում, զանազան գիտա-տեխնիկական,
ֆիզկուլտուրային ու կուլտուր-լուսավորա-
կան ընկերություններում և այլն։

Այսպիսով, Սովետների ուժը մասսաների
հետ ունեցած կենդանի կապի մեջ է։ Այդ առ-

թիվ ընկեր Ն. Ս. Խրուշչովը ասում է. «Աշխատավոր մասսաների հետ անխզելի կապի մեջ է Սովետների հզոր ուժի աղբյուրը։ Եվ որքան ամուր է այդ կապը, որքան ավելի լայնորեն օգտագործեն Սովետները ժողովրդական նախաձեռնության անսպառ աղբյուրները, որքան ավելի խոր զարգացնեն նրանք սոցիալիստական հասարակության աշխատավորների ակտիվությունը, տարածելով ժողովրդական ձեռներեցության լավագույն օրինակները, այնքան ավելի բեղմնավոր կլինի Սովետների աշխատանքը»։

Կոմունիստական պարտիան և Սովետական պետությունը միշտ էլ առաջնակարգ նշանակություն են տվել և տալիս են տեղական Սովետներին։ Այդ առթիվ մեծ Լենինը ասել է. «... եթե մեր ռևոլյուցիան հասել է ներկայիս հաջողություններին, ապա այդ նրանից է, որ մենք միշտ մեր ամենագլխավոր ուշադրությունը նվիրել ենք տեղական իշխանություններին, հենց իրենց՝ տեղերի փորձին»։

Կենսագործելով պարտիայի XX համագումարի որոշումները, պարտիայի ՍՄԿՊ Կենտկոմը և Սովետական կառավարությունը իրականացրին մի շարք միջոցառումներ, որոնց նպատակն էր զարգացնել սովետական



դեմոկրատիան, ավելի լայնորեն ընդգրկել մասսաներին պետության կառավարման, նրա կազմակերպչական, տնտեսական գործունեության մեջ։ Այդ նկատառումներով զգալիորեն լայնացվեցին միութենական ռեսպուբլիկաների իրավունքները, իսկ դրա հետ միասին նաև տեղական Սովետների իրավունքները։ Նրանց տնօրինության տակ անցան արդյունաբերական և կուլտուր-կենցաղային սպասարկման մի շարք նոր ձեռնարկություններ։ Բարձրացավ աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների դերը։ ՍՄԿՊ XXI համագումարում ընկեր Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ «Մեր հասարակարգի զարգացման արդի էտապում է՛լ ավելի է աճում աշխատավորների դեպուտատների Սովետների՝ որպես պետական իշխանության օրգանների դերը, որոնք պետք է իրենց ամբողջ աշխատանքը կառուցեն, հենվելով մասսաների ակտիվության վրա, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ընդլայնման, մեր երկրի բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքի և ժողովուրդների բարեկամության է՛լ ավելի ամրապնդման հիմքի վրա»։ Ահա թե ինչու ՍՍՌՄ Կոնստիտուցիայի սկզբունքներով և Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 56-րդ և 109-րդ հոդվածների

հիման վրա աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, խոշոր քաղաքներում՝ շրջանային և ավանային ու գյուղական Սովետներն ընտրվում են համապատասխան շրջանի, քաղաքի, ավանի և գյուղի աշխատավորների կողմից՝ ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ, երկու տարի ժամանակով։ Ընտրական նորմաները և ընտրությունների անցկացման կարգը որոշվում են Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 116-րդ հոդվածով և ընտրությունների Կանոնադրությամբ։

Ըստ Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 57-րդ հոդվածի աշխատավորների դեպուտատների տեղական Սովետներն իրենց տերիտորիայում ղեկավարում են կուլտուրական-տնտեսական շինարարությունը, սահմանում են տեղական բյուջեն, ղեկավարում իրենց ենթակա կառավարման օրգանների գործունեությունը, ապահովում պետական կարգի պահպանումը, աջակցում երկրի պաշտպանության ուժեղացմանը, ինչպես նաև ապահովում են օրենքների կատարումը և քաղաքացիների իրավունքների պաշտպանությունը։ Պետական իշխանության տեղական օրգանների իրավասությունն ու անելիքները





հսկայական են։ Նրանք մեծ դեր են կատա-
րում ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների,
ժողովրդական տնտեսության յոթնամյա պլա-
նի, ՍՄԿՊ Կենտկոմի և Սովետական կառա-
վարության մի շարք որոշումների իրակա-
նացման գործում։ Սովետներն ամրապնդել
են իրենց կապերը մասսաների հետ, նրանց
գործունեությունը ուղղված է աշխատավոր-
ների ամենօրյա կարիքների ու պահանջների
բավարարմանը։

Սովետների աշխատանքի կազմակեր-
պական-իրավական հիմնական ձևը սեսիան
է, որը գումարում են նրանց գործադիր կոմի-
տեները։

Աշխատավորների դեպուտատների քա-
ղաքային, շրջանային, գյուղական և ավանա-
յին Սովետների սեսիաները գումարվում են
տարեկան ոչ պակաս, քան վեց անգամ, իսկ
շրջանային բաժանում ունեցող քաղաքնե-
րում, ինչպես, օրինակ, Երևանում, քաղաքա-
յին Սովետի սեսիաները՝ տարեկան ոչ պա-
կաս քան 4 անգամ։ Սովետների սեսիաները
պետական մեծ կարևորություն ունեցող երե-
վույթ են, պետական աշխատանքի մեծ դըպ-
րոց հազարավոր դեպուտատների և սովետա-
կան ակտիվի համար։ Սովետների սեսիանե-
րում կոլեգիալ կերպով քննարկվում և լուծ-

վում են ամենից ավելի էական հարցերը,
սահմանվում և հաստատվում տվյալ տերի-
տորիայի Սովետի բյուջեն և ժողովրդա-տըն-
տեսական պլանը։ Այնտեղ քննարկվում են
արդյունաբերության և գյուղատնտեսության
հետագա զարգացման ու ամրապնդման, գյու-
ղատնտեսության կարևորագույն աշխատանք-
ների նախապատրաստման ու անցկացման,
ժողովրդական կրթության, լուսավորության,
առողջապահության, կոմունալ տնտեսության,
բարեկարգման, առևտրի և այլ հարցեր։

Սովետների սեսիաներում սիստեմատի-
կորեն քննարկվում են կազմակերպչական-
մասսայական աշխատանքի հարցերը, գործ-
կոմների, նրանց բաժինների հաշվետու զե-
կուցումները, արդյունաբերական ձեռնարկու-
թյունների, սովետական տնտեսությունների,
կոլտնտեսությունների աշխատանքի հարցերը
և այլն։

Սովետների աշխատանքին գործնական
օգնություն ցույց տալու նպատակով սեսիա-
ներում ընտրվում են մշտական հանձնաժո-
ղովներ՝ տվյալ տերիտորիայի տնտեսական ու
կուլտուրական շինարարության հիմնական
ճյուղերին համապատասխան։ Նրանք որպես
Սովետների օժանդակ օրգաններ խոշոր աշ-
խատանք են կատարում պարտիայի և կառա-



վարության որոշումների իրականացմանը
նպաստելու, սեսիաներում քննվող հարցերը
նախապատրաստելու, ուսումնասիրելու ուղ-
ղությամբ։ Հանձնաժողովները կոնկրետ ա-
ռաջարկություններ են անում ձեռնարկու-
թյունների, հիմնարկների աշխատանքները և
Սովետների գործունեությունը բարելավելու,
ինչպես նաև նկատված թերությունները վե-
րացնելու ուղղությամբ։ Այդ հանձնաժողով-
ները իրենց աշխատանքներին մասնակից են
դարձնում հասարակական կազմակերպու-
թյունների ներկայացուցիչներին և տեղական
ակտիվին, ուժեղացնում Սովետների կապը
ընտրողների հետ և աշխատավորական լայն
մասսաներին ներգրավում պետական կառա-
վարման գործի մեջ։

Սովետների սեսիաներում ընտրում են
գործադիր կոմիտեներ՝ կազմված նախագա-
հից, նրա տեղակալներից, քարտուղարից և
անդամներից։

Գործադիր կոմիտեները Սովետների սե-
սիաների միջև ընկած ժամանակաշրջանում
իրագործում են իրենց տերիտորիայի կուլ-
տուրական և տնտեսական շինարարության
ղեկավարությունը, աշխատավորների դեպու-
տատների համապատասխան Սովետների և
վերադաս պետական օրգանների որոշումնե-

րի հիման վրա։ Նրանք ղեկավարում են գործկոմների բաժինների և վարչությունների աշխատանքները, միջոցներ են ձեռք առնում իրականացնելու բյուջեն, ժողովրդա-տնտեսական պլանը, գործնականորեն կազմակերպում են պետական և հասարակական կարգի պահպանումը և այլն։

Համաձայն Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 66-րդ հոդվածի, Սովետների գործադիր օրգաններն անմիջականորեն հաշվետու են ինչպես այն Սովետի առջև, որն ընտրել է նրանց, այնպես էլ վերադաս Սովետի գործադիր օրգանի առջև։

Տեղական Սովետների գործադիր կոմիտեները, բացի գյուղական ու ավանային Սովետների գործկոմներից, ունեն Սովետների կողմից կազմվող համապատասխան բաժիններ ու վարչություններ, որոնք իրենց գործունեության ընթացքում ենթարկվում են ինչպես իրենց Սովետին ու նրա գործադիր կոմիտեին, այնպես էլ Հայկական ՍՍՌ համապատասխան մինիստրությանը։

Աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետի գործադիր կոմիտեն կազմում է նաև գյուղատնտեսության շրջանային տեսչություն և ղեկավարում է նրա աշխատանքը, կազմակերպում է արտադրա-տեխնիկական



խորհուրդ՝ գյուղատնտեսության հեռանկարային զարգացման և գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը գյուղատնտեսության մեջ արմատավորելու առաջարկությունները քննարկելու ու նախապատրաստելու համար։

Պետական իշխանության տեղական օրգանների կառուցման վերոհիշյալ ամբողջ սիստեմը այդ օրգաններին դարձնում է առավել դեմոկրատական։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը հսկայական նշանակություն են տալիս իշխանության տեղական օրգաններին։ Ահա թե ինչու աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ներկա ընտրությունները ունեն խոշոր քաղաքական նշանակություն։

Բոլորս դեպի ընտրությունները։

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐԻ 43-ՐԴ ՏԱՐԻՆ

Ս. Մարտիրոսյան
Սովետական Միության Հերոս, գեներալ-լեյտենանտ

*1961 թվականի փետրվարի 23-ին լրանում է Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի 43-րդ տարին։*

*Սովետական Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը ծնվել են երիտասարդ Սովետական իշխանության պաշտպանության համար մղվող հերոսական մարտերում, ներքին և արտաքին թշնամիների դեմ մղած ճակատամարտերի բովում։*

*Հանճարեղ Լենինի գլխավորությամբ, Կոմունիստական պարտիայի կողմից ստեղծված, հաղթանակների փառապանծ ուղի անցած Սովետական Զինված Ուժերը մեր պետության հուսալի պատվարն են, սովետական ժողովրդի խաղաղ ստեղծագործական աշխատանքի հավատարիմ պահապանը․ Նա բացի պաշտպանական նպատակներից, այլ նպատակներ չունի։*



*Սովետական ժողովուրդը սիրում է իր*
*բանակը նրա նպատակների ազնվության հա-*
*մար, Սովետական Հայրենիքին ու կոմու-*
*նիզմի մեծ գործին անսահման նվիրվածու-*
*թյան ու հավատարմության համար։*
*«Մեր ժողովուրդը, Կոմունիստական*
*պարտիան,— ասել է ՍՍՌՄ Գերագույն Սո-*
*վետի 4-րդ սեսիայում ընկ. Ն. Ս. Խրուշչո-*
*վը,— իրենց բացառիկ հարգանքն ու սերն*
*են արտահայտում զինվորների, նավաստի-*
*ների, սերժանտների, ավագների, սպանե-*
*րի, գեներալների, ծովակալների և մարշալ-*
*ների նկատմամբ, որոնք հավատարիմ ծա-*
*ռայել են ու ծառայում են սովետական ժո-*
*ղովրդի շահերին, մարքսիզմ-լենինիզմի մեծ*
*իդեալներին։ Հավերժ կապրի մեր ժողովրդի*
*քաջարի որդիների և դուստրերի փառքը,*
*որոնք քաղաքացիական պատերազմում և*
*Հայրենական Մեծ պատերազմում արյուն*
*թափեցին, իրենց կյանքը նվիրաբերեցին մեր*
*Հայրենիքի ազատության և անկախության*
*պայքարին»։*
*Սովետական բանակը իսկական ժողովըր-*
*դական բանակ է։ Ժողովուրդն ու բանակը*
*մեզ մոտ մի ամբողջություն են, մի ընտա-*
*նիք։ Դրա համար էլ նա վայելում է սովե-*

տական ժողովրդի հայրական հոգատարությունը։

Ինչպես քաղաքացիական պատերազմի, այնպես էլ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին Սովետական Զինված Ուժերի շարքերում, պարտիզանական ջոկատներում, ռուս մեծ ժողովրդի հետ միասին, հերոսաբար մարտնչում էին մեր երկրի բոլոր ժողովուրդների քաջարի զավակները՝ ուկրաինացիները, բելոռուսները, հայերը, ադրբեջանցիները, վրացիները, թուրքմենները, թաթարները, ղազախները, լատիշները և մյուս ժողովուրդները։

Քաղաքացիական պատերազմում ինտերվենտների և սպիտակ գվարդիականների բանդաների դեմ, Հայրենական Մեծ պատերազմում գերմանական ֆաշիզմի և ճապոնական իմպերիալիզմի բանակների դեմ Սովետական Զինված Ուժերի տարած պատմական հաղթանակները ամբողջ աշխարհին ցույց տվեցին մեր Բանակի հզորությունը, Հայրենիքին անսահմանորեն նվիրված լինելը։

Այդ հաղթանակները ապացուցեցին նաև այն, որ ինչպես սոցիալիստական հասարակարգը գերակշռում է բուրժուական հասարակարգին, այնպես էլ մեր Բանակի



հզորության աղբյուրը հանդիսացող սովետական ռազմական արվեստը, որի հիման վրա կառուցվում, դաստիարակվում և գործում են մեր Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը, գերակշռում է բուրժուական ռազմական արվեստին։

Եվ վերջապես, այդ հաղթանակները վկայում են Սովետական Զինված Ուժերի ռազմիկների բարձր մարտական հատկության մասին, մեր հրամանատարական կադրերի կազմակերպական ընդունակությունների աճման մասին, կադրեր, որոնք սովորել են խիզախությունն ու արիությունը զուգակցել մարտի դաշտում զորքերին կառավարելու հմտության հետ և ապահովել հաղթանակը։

Մեր Հայրենիքի թշնամիների դեմ Սովետական Զինված Ուժերի ձեռք բերած հաղթանակներում իր ամբողջ վեհությամբ հանդես եկան նրա մարտական առանձնահատկությունները, որպես ազատագրված բանվորների և գյուղացիների բանակի, Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի բանակի, ժողովուրդներին ճնշումից և ստրկացումից ազատագրող բանակի։

Մեր Բանակի մեծագույն արժանիքներից մեկը նաև այն է, որ նա ոչ միայն պաշտպանեց մեր Հայրենիքի ազատությունն ու

անկախությունը, այլև ֆաշիստական ստրկացման վտանգից ազատագրեց Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրների ժողովուրդներին։ Այդ իսկ պատճառով էլ Սովետական Զինված Ուժերը ըստ արժանվույն վայելում են ոչ միայն մեր ժողովրդի, այլև աշխարհի աշխատավորության և ճնշված ժողովուրդների սերն ու հարգանքը։

Սովետական Զինված Ուժերի հզորության վճռական աղբյուրը, նրա պատմական հաղթանակների գրավականը դա Կոմունիստական պարտիայի ղեկավարող և ուղղություն ցույց տվող դերն է։ Դա այն վիթխարի գործոնն էր, որ կազմակերպում և ոգեշնչում էր Սովետական Զինված Ուժերի մարտիկներին ռազմաճակատում, սովետական մարդկանց թիկունքում և անձնուրաց ու հերոսական սխրագործությունների էր կոչում նրանց հանուն հաղթանակի։

Եթե մեր Բանակը խաղաղության ու Հայրենիքի պաշտպանության նպատակներից բացի, ուրիշ նպատակներ չունի, ապա բուրժուական բանակները ծառայում են իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությանը, ուրիշի տերիտորիաները հափշտակելու և ժողովուրդներին ստրկացնելու նպատակին։ Իմպերիալիստական երկրների բանակները



հանդիսանում են կապիտալիստների և կալվածատերերի տիրապետությունը հաստատելու, ռեակցիայի գործիք, կապիտալի ծառան աշխատավորների դեմ մղվող պայքարում, գաղութային երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման ճնշման գործիք։ Կապիտալիստական երկրների բանակները դաստիարակվում են զավթողական և բոլոր ժողովուրդներին ճնշելու ոգով, դեպի սոցիալիստական երկրների ժողովուրդները ատելության ոգով։ Նրանց մեջ սերմանում են արհամարհանք դեպի «գունավոր» ժողովուրդները, իրենց զինվորների մեջ գրգռում գազանային բնազդը։ Ամերիկյան, անգլիական, բելգիական և այլ իմպերիալիստների բանակների զինվորների գազանությունները Կորեայում, Կոնգոյում, Լաոսում և մի շարք աֆրիկյան և ասիական մայր ցամաքների այլ երկրներում, դրանց անհերքելի ապացույցներն են։

Սովետական Զինված Ուժերի 43-րդ տարեդարձի տոնակատարությունը տեղի է ունենում մեր ժողովրդի ստեղծագործական ուժերի ծաղկման շրջանում, սոցիալիստական էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի նոր հզոր վերելքի պայմաններում։

Կենսագործելով ՍՄԿՊ XXI համագումա-

րի պատմական որոշումները՝ սովետական ժողովուրդը մեծագույն հաջողություններ ձեռք բերեց յոթնամյակի 2-րդ տարվա վիթխարի պլանների կատարման բնագավառում։ Սովետական մարդիկ ոգեշնչված այդ հաջողություններից՝ է՛լ ավելի մեծ եռանդով ու խանդավառությամբ ձեռնամուխ են եղել կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագրի կենսագործմանը։

Շնորհիվ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի լենինյան ղեկավարության այժմ մեր Սոցիալիստական պետությունը դարձել է աշխարհի ամենահզոր, ամուր և հեղինակավոր պետությունը, որի ժողովուրդները վստահորեն ընթանում են դեպի կոմունիզմ։

Մեր երկրի տնտեսական հզորության աճի հետ զուգընթաց աճել և ամրապնդվել է Սովետական Զինված Ուժերի հզորությունն ու մարտունակությունը։ Սովետական Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը ներկայումս իրենց տրամադրության տակ ունեն ամեն տեսակի ժամանակակից զենք և չգերազանցված ռազմական տեխնիկա, որոնք կարող են ջախջախիչ հարված հասցնել բոլոր նրանց, ովքեր, մոռանալով պատմության համոզիչ դասերը, կհամարձակվեն նորից հարձակվել մեր Հայրենիքի վրա։



Կենսագործելով կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագիրը, Սովետական Միությունը, սոցիալիստական լագերի մյուս երկրների հետ միասին հետևողական և համառ պայքար է մղում կայուն խաղաղության համար, հաստատակամորեն իրականացնելով կյանքում խաղաղ գոյակցության գաղափարը։

Սովետական ժողովուրդը զբաղված լինելով խաղաղ ստեղծագործական աշխատանքով՝ լի է պատերազմը արգելելու և ամբողջ աշխարհում խաղաղությունը ապահովելու վճռականությամբ։

Այն դեպքում, երբ Սովետական Միությունը անընդհատ հանդես է գալիս սպառազինությունների կրճատման և ընդհանուր ու լրիվ զինաթափման մշտական, հետևողական առաջարկություններով, կապիտալիստական երկրները և առաջին հերթին ԱՄՆ-ի Միացյալ Նահանգները. նույնպիսի հետևողականությամբ զարկ են տալիս սպառազինությունների մրցավազքին, քանի որ նրանք առաջնորդվում են ագրեսիվ նպատակներով և, վերջապես, մահվան զենքի արտադրությունից ստացվող շահույթը հասնում է հսկայական չափերի։

Եթե մեզ մոտ անընդհատ կրճատվում են

ազգաբնակչությունից գանձվող հարկերը, ապա ԱՄՆ-ում ճիշտ հակառակ պատկեր ենք տեսնում։ Այնտեղ պետական բյուջեի 70-ից ավելի տոկոսը գոյանում է բնակչությունից գանձվող հարկերից և հիմնականում ծառայում սպառազինությունների մրցավազքին, մի բան, որը ծնում է գործազրկություն, աղքատություն և այլ չարիքներ։

Այն ժամանակ, երբ աշխարհի խաղաղասեր երկրները Սովետական Միության գլխավորությամբ պայքարում են միջազգային լարվածության թուլացման համար, կապիտալիստական երկրների ռեակցիոն ուժերը ԱՄՆ-ի գլխավորությամբ արգելակում են դրան, շարունակում են ակտիվացնել ագրեսիվ բլոկների՝ «սառը» և «տաք» պատերազմների կողմնակիցների գործունեությունը։

Այդ մասին են վկայում Եվրոպայի, Ասիայի և Աֆրիկայի մայր ցամաքներում տեղի ունեցող դեպքերը։

Հաշվի առնելով արդի միջազգային իրադրությունը և իմպերիալիստական պետությունների կողմից տարվող՝ սպառազինությունների մրցավազքի ու նոր պատերազմի նախապատրաստության քաղաքականությունը, Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը անդուլ կերպով հոգ են տանում մեր երկրի պաշտպանությունը ամրապնդելու մասին։

Ինչպես ընկեր Խրուշչովն է ասում, Սովետական Միությունը այժմ ամենաուժեղ ռազմական տերությունն է, բայց մենք չենք ուզում օգտվել այդ առավելությունից։ Մենք պատրաստ ենք այսօր ևեթ ոչնչացնելու մեր ողջ ռազմական զենքը, եթե այդ բանն անեն նաև Արևմուտքի տերությունները։

Կոմունիստական պարտիան, Սովետական կառավարությունը և սովետական ժողովուրդը կարող են վստահ լինել, որ Սովետական Զինված Ուժերը այսուհետև ևս հուսալիորեն կպաշտպանեն Մեծ Հոկտեմբերի նվաճումները իմպերիալիստական ագրեսորների ոտնձգություններից և աչալուրջ կերպով կկանգնեն սովետական մարդկանց խաղաղ աշխատանքի պաշտպանության դիրքերում՝ հանուն կոմունիզմի հաղթանակի։

# Ի ՊԱՏԻՎ ՍՄԿՊ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ

(թվեր և փաստեր)

Սիրով ու խանդավառությամբ ընդունեցին մեր ռեսպուբլիկայի աշխատավորները առաջիկայում հարազատ Կոմունիստական պարտիայի հերթական XXII համագումար հրավիրելու մասին ուրախալի լուրը։ Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում և ամենուրեք աշխատավորները ստանձնեցին բարձր պարտավորություններ՝ ի պատիվ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարի և այժմ եռանդագին աշխատում են այն կատարելու համար։ Ահա տեղեկություններ այդ մասին։

Երևանի Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը իր բազմամարդ ժողովում որոշել է այս տարվա տասն ամսվա պետական պլանը կատարել ՍՄԿՊ XXII համագումարի բացման օրը՝ հոկտեմբերի 17-ին, ժամկետից 14 օր շուտ։ Կիրովցիները միաժամանակ պարտավորվել են աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը գերակատարել 5 տոկոսով։



Եռանդուն աշխատանք է կատարվում Երևանի ալյումինի գործարանում։ Գործարանի բոլոր ցեխերն ու հերթափոխությունները տալիս են միայն բարձրորակ արտադրանք և իրենց պլանները կատարում 103—104 տոկոսով։

Արթիկտուֆի № 1 հանքի բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողները պարտավորվել են հունվար ամսին երկրին տալ 2 հազար 400 խորանարդ մետր տուֆ և տարեկան պլանները կատարել մինչև ՍՄԿՊ XXII համագումարի բացման օրը։

Ի պատիվ ՍՄԿՊ XXII համագումարի աշխատանքային նոր պարտավորություններ ստանձնելուց հետո, Ղափանի Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի բոլոր ցեխերում 30—50 տոկոսով գերակատարում են օրվա առաջադրանքները։

Երևանի կոմպրեսորների գործարանի համախառն արտադրանքն այս տարի, անցյալ տարվա համեմատությամբ, կավելանա 25 տոկոսով։ Գործարանում արդեն իրագործվում են տեխնիկական նոր միջոցառումներ։ Վերջերս գործարկվեց կաղապարման մի նոր մեքենա, որի շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 5 անգամ։

Անցյալ տարվա համեմատությամբ այս տարի Երևանի էլեկտրատեխնիկական գործարանում համախառն արտադրանքն ավելանալու է 30 տոկոսով։

Գործարանի բանվորները և ինժեներա-տեխնիկական
աշխատողները որոշել են ՍՄԿՊ XXII համագումարը
դիմավորել տասն ամսվա պլանը բարձր ցուցանիշնե-
րով կատարած։

Նույն գործարանի կոմունիստական աշխա-
տանքի բրիգադաները և փաթաթման, ամլման, գոր-
ծիքային ցեխերի բանվորներն ու վարպետները պար-
տավորություն են ստանձնել ի պատիվ ՍՄԿՊ XXII
համագումարի տարեկան արտադրական պլանները
կատարել մինչև հոկտեմբերի 17-ը։

Երևանի ալյումինի գործարանը հաջողու-
թյամբ յուրացրել է նուրբ ձուլվածքներ թողարկելու
տեխնոլոգիան, որը իրագործվում է էլեկտրաձուլման
նոր սարքավորումների միջոցով։

Ավելի բարձր որակի արտադրանք տալու նը-
պատակով Երևանի բրդյա նուրբ գործվածքեղենի մա-
հուդի կոմբինատում ստեղծվել է լաբորատորիա, որ-
տեղ աշխատում են գերազանցապես երիտասարդներ։

Կիրովական քաղաքում միայն անցյալ տարի
յուրացվել է արդյունաբերական արտադրանքի 80
նոր տեսակ։ Յուրացված է գազային ավտոմատ կաթ-
սաների և բազմաթիվ բարդ սարքերի արտադրության
տեխնոլոգիան։ Այժմ քաղաքում ավելի քան 100 ձեռ-
նարկություններ, ցեխեր, հերթափոխություններ ու



բրիգադաներ պայքարում են կոմունիստական աշխա-
տանքի կոչման արժանանալու համար։

Ի պատիվ ՍՄԿՊ Կենտկոմի XXII համագումա-
րի Ղափանի պղնձահանքային կոմբինատի աշխատող-
ները որոշել են համախառն արտադրանքի այս տար-
վա տասն ամսվա առաջադրանքը կատարել հոկտեմ-
բերի 17-ին, իսկ կոնցենտրատի թողարկման պլանը՝
դեկտեմբերի 25-ին։ Նույն շրջանի ավտոմեքենաների
նորոգման և տեխնիկական սպասարկման կայանի
կոլեկտիվը որոշել է ՍՄԿՊ XXII համագումարը նշա-
նավորել 1961 թվականի պլանները ժամկետից մեկ
ամիս շուտ կատարած։

Լենինականի էլեկտրատեխնիկական գործա-
րանի կոլեկտիվը ամեն միջոց գործ է դնում ՍՄԿՊ
XXII համագումարը արտադրական նոր հաջողություն-
ներով նշանավորելու համար։ 1960 թվականի պլանը
կատարված է 107,5 տոկոսով, իսկ այս տարվա հուն-
վար ամսվա պլանը՝ ժամկետից շուտ։ Մրցություն է
ծավալվել և արդեն տնտեսվել է մեծ քանակությամբ
հումք և օժանդակ նյութեր։

Լենինականի գուլպայի ֆաբրիկայի ներկ-
ման ցեխի կոլեկտիվը ի պատիվ ՍՄԿՊ XXII համա-
գումարի պարտավորվել է տարեկան պլանը կատարել
մեկ ամիս շուտ և բարձրացնել արտադրանքի որակը։

Պարտիայի XXII համագումարը նոր հաջողություններով դիմավորելու գործում աչքի ընկնող աշխատանք են կատարում նաև կոլտնտեսային աշխատավորները։

Շամշադինի շրջանի Նորաշենի կոլտնտեսականները որոշել են մինչև համագումարի բացման օրը ամեն մի կովից ստանալ ավելի քան 2.000 կիլոգրամ կաթ, ամեն մի ոչխարից՝ 4,3 կիլոգրամ բուրդ, 100 մայր ոչխարից՝ 107 գառ։ Նրանք այժմ արդեն ծնած յուրաքանչյուր կովից կթում են օրական 17—20 կիլոգրամ կաթ։

Եղեգնաձորի Աղբենդ գյուղի հովիվները պարտավորվել են այս տարի յուրաքանչյուր 100 մայր ոչխարից ստանալ 110 գառ։

Աշխատանքային հիանալի հաջողությունների են հասել Հոկտեմբերյանի շրջանի Մրգաշատ գյուղի անասնապահները։ Նրանք այս տարի յուրաքանչյուր կովից ստացել են 2.500 կիլոգրամ կաթ, անցյալ տարվա 2.300-ի դիմաց։

Վեդու շրջանի Արարատ գյուղի կոլտնտեսականները որոշել են պարտիայի XXII համագումարը դիմավորել խաղողի այգիները 40 հեկտար ընդարձակելով և մշակվող բոլոր կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելով։ Անցյալ տարի նրանք բամ-



բակի ամեն մի հեկտարից ստացել են 37 ցենտներ, իսկ խաղողից՝ 68 ցենտներ բերք։

Հրազդանի շրջանի Աթարբեկյան գյուղի կոլտնտեսականները աշխատում են «Յոթնամյակը կատարել երեք տարում» նշանաբանով։ Նրանք խոստացել են ստանձնած պարտավորությունները կատարել մինչև ՍՄԿՊ XXII համագումարի բացման օրը և նախորդ տարվա համեմատությամբ 20—25 տոկոսով ավելացնել կաթի արտադրությունը։

Արտաշատի շրջանի Նորաշեն գյուղի կոլտնտեսականները ի պատիվ ՍՄԿՊ XXII հերթական համագումարի պարտավորվել են բամբակի ամեն մի հեկտարից ստանալ 38 ցենտներ բերք, խաղողից՝ 110 ցենտներ և այս տարի արտադրել 30 տոննա խոզի միս, 170 հազար ձու։

Նույն շրջանի Ծաղկաշենի կոլտնտեսականները խոստացել են 100 մայր ոչխարից ստանալ 110 գառ, 100 կովից նույնքան հորթ և մի կովից 2500 լիտր կաթ։ Կոլտնտեսային շատ անասնապահներ պարտավորվել են ամեն մի կովից ստանալ 3000 լիտր կաթ։

Հոկտեմբերյանի շրջանի Նորապատ գյուղի կոլտնտեսականները աշխատանքային հաջողություններով են դիմավորում ՍՄԿՊ XXII համագումարը։ Նրանք հիանալի արդյունքներով փակեցին գյուղա-

տնտեսական տարին։ Կատարված է ամեն մի հեկտարից 27 ցենտներ բամբակ, 29 ցենտներ հացահատիկ և ամեն մի կովից 3600 կիլոգրամ կաթ ստանալու պարտավորությունը։

Մարտունու շրջանի Ծովինար գյուղի կոլտնտեսության Ա. Մանուկյանի ծխախոտագործական օղակը որոշել է ի պատիվ ՍՄԿԿ XXII համագումարի յուրաքանչյուր հեկտարից ստանալ 30 ցենտներ ծխախոտի հումք։ Կոլտնտեսությունը անցյալ տարի երկրին տվել է 885 ցենտներ հումք։ Նույն շրջանի Ղարանլուղի կոլտնտեսությունը գարնանացանի համար պատրաստել է 600 ցենտներ ցորենի, 300 ցենտներ գարու, 200 ցենտներ կարտոֆիլի և 78 ցենտներ կորնգանի սերմացու։



Այս օրերին մեծ են նաչողությունները նաև ռեսպուբլիկայի մյուս ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում: Ռեսպուբլիկայի աշխատավորները ամենուրեք ջանք չեն խնայում ՍՄԿԿ XXII համագումարի պատվին ստանձնած պարտավորությունները բարձր ցուցանիշներով կատարելու համար:



# ԱՄԵՐԻԿՅԱՆ ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԸ ԱՇԽԱՐՀԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԹՇՆԱՄԻՆ Է

Իմպերիալիստները և հատկապես ամերիկյան միլիտարիստները կանգնած են «սառը» պատերազմը, սպառազինությունների մրցավազքը շարունակելու դիրքերում։ Այն-




Թեև նոր մորթու մեջ եմ, բայց չէ՞ որ բարքերը միշտ նույնն են:

ինչ Սովետական Միությունն անում է հնարավոր ամեն ինչ խաղաղությունը պահպանելու և նոր պատերազմի սանձազերծում թույլ չտալու համար։

«Մենք,— ասաց ընկ. Ն. Ս. Խրուշչովը,— խաղաղություն ենք ուզում։ Սակայն խաղաղության ձգտելը չի նշանակում խաղաղու-



Ես ինչպե՞ս կարող եմ բարեկամության ձեռք մեկնել Արևելքին, երբ իմ երկու ձեռքերն էլ զբաղված են։






Նա կարծում է, թե անվտանգություն է ձեռք բերել։

թյուն հայցել։ Խաղաղությունը պետք է նվաճել։ Իսկ խաղաղությունը կարելի է նվաճել աշխատանքով, մեծացնելով մեր երկրի հզորությունը, ստեղծելով նորագույն և ճշգրտագույն զենք, բարձրացնելով էկոնոմիկան, զարգացնելով տեխնիկան, գիտությունը, ստեղծելով նորանոր մեքենաներ, որոնք հեշտացնում են մարդու աշխատանքը, ապահովելով մարդկանց նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարումը»։

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ

*Հայտնի է, որ աշխարհագրական դիրքի պատճառով տարբեր քաղաքներում տարբեր ժամեր են լինում։ Այսպես օրինակ, եթե մենք գիտենք, որ Երևանում առավոտվա ժամը 10-ն է, ապա այդ նույն պահին Մոսկվայում առավոտյան ժամը 9-ն է։ Սա մեզ հայտնի է։ Իսկ եթե, ասենք, մեկն անհրաժեշտ գործով ուզում է զանգահարել Մուրմանսկ և չգիտի, թե այնտեղ ժամը քանիսն է, այստեղ արդեն դժվար է կողմնորոշվելը. գուցե այդ ժամին այնտեղ գիշեր է, և իմաստ չունի այլևս զանգ տալը։ Ահա այսպիսի անհրաժեշտ շարժառիթներից ելնելով՝ ստեղծել են մի ժամացույց, որը ցույց է տալիս ուզած վայրի ժամանակը։ Ժամացույցի մեծ և փոքր սլաքները շարժվում են ինչպես մյուս բոլոր ժամացույցներինը և ցույց տալիս տեղական ժամանակը։ Ժամացույցի մեջտեղում կա մի երկրորդ, կլոր թվացույց, որը օրվա ժամերի քանակին համապատասխան ունի 24 բաժանում։ Այդ թվացույցը օրվա ընթացքում կատարում է մեկ լրիվ պտույտ, ընդ որում՝ ժամացույցի սլաքին հակառակ ուղղությամբ։*

*Ժամացույցի հիմնական թվացույցի վրա, թվերի*



*տակ, գրված են երկրագնդի տարբեր մասերում գտնվող քաղաքների անուններ, և դեպի քաղաքների անունները ձգվող շտրիխ-գծիկների միջոցով չափազանց հեշտությամբ որոշում են, թե ժամը քանիսն է։*

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

Լեհաստանում.— *1960 թվականից սկսել են թողարկել շատ փոքրիկ ռադիոընդունիչներ, որոնց քաշը հավասար է 100 գրամի և հեշտությամբ տեղավորվում են գրպանում. այդ ռադիոընդունիչների գործողության շառավիղը հավասար է 70 կիլոմետրի։ Այդ փոքրիկ «օգնական» ռադիոընդունիչը գրպանում տեղավորելով՝ հերթապահ միլիցիոները, բժիշկը կամ այլ բնագավառի աշխատող հերթապահը կարող է միանգամայն վստահ լինել, որ ժամանակին իրեն կհաղորդվի անհրաժեշտ ռադիոազդանշանը։*

Չինաստանի *թեյի ֆաբրիկաներից մեկում արտադրության մեջ տեղադրված են բամբուկից կամ փայտից պատրաստված ավտոմատ հոսքային գծեր։ Այս փայտյա ավտոմատները հաջողությամբ կատարում են թեյի մշակման տասնյակ օպերացիաներ, մի բան, որ առաջներում միայն ձեռքով են կատարել։ Այս փայտյա ավտոմատների պատրաստելը շատ հեշտ է և շատ էժան։ Բացի այդ, նրանք աչքի են ընկնում բարձր արտադրողականությամբ։ Այս նոր ավտոմատների շնորհիվ հեշտացել է բանվորների աշխատանքը և իջել է արտադրանքի ինքնարժեքը։*

## ԱՐԴՅՈՔ ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

... Որոշ թռչուններ չվում են միայն գիշերով։ Իսկ սա նշանակում է, որ նրանք առաջնորդվում են աստղերի դասավորությամբ։ Դրանում համոզվելու համար մի աստղադիտարանում կատարել են շատ հետաքրքրական փորձեր։ Այսպես. աստղադիտարան են տարել մի քանի շիկահավ (փոքրիկ թռչուններ են, որոնք չվում են գիշերով)։ Երբ աստղադիտարանում լույսը հանգցրել են, սկսել են փայլփլել արհեստական աստղերը, և ստեղծվել է գիշերվա պատրանք։ Կարճ ժամանակ անց շիկահավերը բարձրացել են վեր և սլացել այն ուղղությամբ, որ ուղղությամբ սովորաբար կատարում են իրենց սեզոնային չուն։ Այդ ժամանակ աստղադիտարանում գիտնականները փոխել են աստղերի դիրքը, թռչունները իսկույն նկատել են այդ փոփոխությունը և իրենք էլ են փոխել իրենց թռիչքի ուղղությունը։ Հավանաբար այդ փոքրիկ «աստղագետները» լավ կարողանում են կարդալ աստղային քարտեզը։

... Երկրագնդի վրա գոյություն ունեն 3 հազարից ավելի լեզուներ։

... Մեկ կիլոգրամ շաքարն ստացվում է 7 կիլոգրամ շաքարի ճակնդեղից։

## ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀԵՌԱԿԱ ԿՈՆՖԵՐԱՆՍ

Հարգելի ագիտատորներ, անցյալ տարվա փետրվար ամսին «Ագիտատորի բլոկնոտ»-ի խմբագրությունը հարց ու պատասխանի միջոցով անցկացրեց ագիտատորների հեռակա կոնֆերանս։ Ռեսպուբլիկայի բազմաթիվ ագիտատորներ ակտիվորեն մասնակցեցին կոնֆերանսի աշխատանքներին և շատ արժեքավոր դիտողություններ արեցին ու օգտակար խորհուրդներ տվեցին խմբագրությանը։

Այժմ, ընկեր ագիտատորներ, խնդրում ենք Ձեզ ավելի ակտիվորեն մասնակցել հեռակա կոնֆերանսի աշխատանքներին և գրավոր հայտնել խմբագրությանը Ձեր ցանկությունների մասին։

1. Զրույցի նախապատրաստվելիս «Ագիտատորի բլոկնոտ»-ում լույս տեսած ո՞ր նյութերն են Ձեզ օգտակար եղել։

2. Ո՞ր նյութերը Ձեզ չեն բավարարել, և ինչո՞ւ։

3. Դուք ինչպիսի՞ հոդվածներ, զրույցներ կցանկանայիք տպագրվեին «Ագիտատորի բլոկնոտ»-ում։

4. Ձեր ազգանունը, անունը և հայրանունը։ Որտե՞ղ եք ագիտացիոն աշխատանք կատարում։

Խմբագրությունը շնորհակալ կլինի Ձեզանից, եթե դուք Ձեր խելացի խորհուրդներով օգնեք «Ագիտատորի բլոկնոտը» ավելի հետաքրքիր ու ավելի բովանդակալից դարձնելու գործին։

«ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-Ի
ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Նշումների համար

Նշումների համար

# СОДЕРЖАНИЕ

## МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД



## ИСПОЛЬЗУЙ ВО ВРЕМЯ БЕСЕДЫ




Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

- Ռ. Հ. Խաչատրյան — *Արտասահմանի հայ կոմունիստական մամուլի պատմությունից*, 150 էջ, գինը 59 կոպ.։
- Ս. Միքայելյան—*Պրոֆեսիոնալ տեխնիկական կրթությունը Սովետական Հայաստանում*, 92 էջ, գինը 9 կոպ.։
- Հայաստանի ԿՊ Կենտկոմին կից Պարտիայի պատմության ինստիտուտ, ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալ— *Ռևոլյուցիոն կոչեր և թռուցիկներ*, 703 էջ, գինը 1 ռ. 19 կոպ.։
- Գ. Ղ. Սեյան— *Ընդդեմ ռեվիզիոնիզմի պետության հարցում*, 200 էջ, գինը 27 կոպ.։

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 3 1961 г.

ՎՖ 00013 Պատվեր 72 Տպաքանակ 9363

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆ արդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը՝ 8 կոպ.